ներքին և արտաքին կացութիւնը, ինչպէս նաեւ բոլշեւիկեան կուսակցութեան վերաբերեալ կարգ մը ներքին խնդիրներ։

Ըստ Ստալինի, վերջին շրջանը կազմած է անկիւնադարձ մը՝ նպաստաւոր Խորհրդ. Միութեան համար, տնտեսական նոր եւ շատ կարեւոր ճիգերով, — աննպաստ՝ դրամատիրական պետութիւններուն համար՝ տնտեսական անկումով։

Անցնելով ռուսական պարտքերու հատուցման խնդրին, Ստալին ըսաւ.—

Այս մարզին մէջ, մեր քաղաքականութիւնը շատ յստակ եւ ճիշդ է, եթէ մեզի վարկ բանան, պատրաստ ենք վճարելու մեր նախապատերազմեան պարտքերուն մէկ մասը, զանոնք նկատելով իբր վարկերու յաւելուածական տոկոսներ։

Այս կերպով, յեղափոխական բոլշեւիզմը նոր գիւտ մըն է որ կը պատրաստուի հանդէպ քաղքենի պետութիւններուն, և կարթ մըն է որ կը փորձէ նետուիլ միջազգային դրամատիրութեան...։

## Յոյն կառավարութեան եւ սինոտին միջեւ

Բուռն վէճ մը ծագեցաւ Աթէնքի կառավարութեան եւ եկեղեցական իշխանութեան միջեւ, Յունաստանի վանքերուն վերաբերեալ կալուածներուն եւ սեփականութեանց հաշուեյարդարին առթիւ։

Սինոտը նիստ պիտի գումարէ եւ կը կարծուի թէ պիտի որոշէ յայտարարել բոլոր աշխարհի եկեղեցական իշխանութեանց թէ «օրթոտոքս եկեղեցին ներկայիս կը հալածուի յոյն կառավարութեան կողմէ»։

## Պոլիվիոյ յաղթական յեղափոխութիւնը

Պոլիվիոյ մայրաքաղաքը, ինչպէս գրեր էինք, ինկաւ յեղափոխականներու ձեռքը։ Դեռ յայտնի չէ թէ ժամանակաւոր կառավարութեան հաստատման նախընթաց կռիւներուն մէջ, ի՞նչ է մարդկային կորուստներուն գումարը։ Միայն Լափազի եւ արուարձաններուն մէջ, 500ի չափ մեռելներ եւ հազարաւոր վիրաւորներ կան։ Վիրաւորուած է նաեւ նախորդ նախագահին՝ Սիլէզի կինը։

Յեղափոխական պետերը կ'ուսումնասիրեն երկիրը խաղաղեցնելու միջոցները։ Կարեւոր քաղաքներ առանց ընդդիմութեան, յանձնուած են յեղափոխականներուն։

## Խռովայոյզ Սպանիան

Սէվիլի մէջ, 40.000 բանուորներու գործադուլը սկսաւ ցոյց տալ իր քաղաքական հետեւանքները։ Գործադուլը սկսած է տարածուիլ ճարտարարուեստի մեծ կեդրոններու մէջ եւս, ինչպէս Փորտօ, Պիլպաօ եւ Մալակա, ուր ծանր բախումներ տեղի ունեցան բանուորներու և կառավարական ուժերու միջեւ։ Ոստիկանութիւնը ստիպուեցաւ զէնքի դիմել։ Մատրիտէն և Պրրնատէն եւս նման լուրեր կուգան։

Սպանիոյ ներքին նախարարութեան մէկ զեկոյցը կը յայտնէ թէ կառավարութիւնը անհրաժեշտ մանրամասնութիւնները քաղած է ներկայ յեղափոխական շարժման մասին և զայն զսպելու համար, պիտի դիմէ կորովի միջոցներու։

Սպանիոյ Աշխատաւորներու Ընդհ. Ընկերութեան կեդրոնը՝ զաւառի իր կազմակերպութիւններուն հրահանգեց զգուշանալ շարժումին որ եւ է մասնակցութիւն բերելէ։

Կը կարծուի թէ շարժումը կը ղեկավարէ համայնավար կուսակցութիւնը։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITION
208bis, Rue Lafayette Paris
Le Gérant H. STEPHAN




ՑԱՆԿ
ՍԱԼՄԱՍՏԻ ԱՂԷՏԵԱԼՆԵՐՈՒՆ
Ի ՆՊԱՍՏ ՇԻՐԱԶԻ ՄԷՋ
ԿԱՏԱՐՈՒԱԾ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ

Հայկ Մօլքոնեան 150 դրամ, Ա. Գիւլզարեան, Տէր եւ Տիկին Մարտիրոս Սարգիսեան, Ս. Մելիքեան, Մ. Քրաչեան, Գ. Մինասեան եւ Ժօլէֆ Նէսիմ 100ական դրամ, Տիկին Մ. Սարգիսեան, Վ. Քէնտիրեան, Տիկին Մ. Կարապետեան եւ Գ. Տէօքմէճեան 50ական, Թ. Աղաճաբէկեան 40, Յօրճ Տէր Յովսէփ Գէորգեան, Յովհ. Խան Ղարախանեան, Յոքթ. Դ. Մանաւազ, Ա. եւ Գ. Տրէնդեան, Ոմն, Յովհ. եւ Տիկին Արժանթի 30ական, Կ. Կարապետեան, Մ. Մարտիրոսեան, Յ. Կարապետեան, Յուսա Կարիքեան, Թ. Նալբանդեան, Լ. Կարիքեան, Մ. Գասպարեան, Տիկին Լ. Ներսէսեան, Տիկ. Եղիսաբէթ 20ական. Սայիտ Բօրզու Խան, Ոմն 15ական, Մ. Թադէոսեան, Ս. Դաւիթեան, Ա. Տրամբլի. Ց. Ադամեան, Գ. Դրօրեան, Մ. Միքայէլեան, Մ. Կարապետեան, Ա. Թադէոսեան, Բժ. Յ. Աղաջանեան, Էմիլ Գյանդեան, Ս. Գասպարեան, Յ. Ասատուրեան. Ն. Աստուրեան, Տիկին Մ. Սահակեան եւ Օր. Վ. Դյանդեան 10ական, Գ. Կարապետեան 6, Ա. Կարապետեան, Տիկին Սառա. Տիկին Շ. Ղազարեան, Բէկլար, Խաչատուրեան եւ Օր. Ռոզա 5ական, Տիկին Մէրի եւ Օր. Եղիսաբէթ, 2ական դրամ: Ընդհանուր գումար 1610 դրամ:



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Լենինկանի նահանգին Սոտաներ գիւղէն Յակոբ Զօպանեան 27—28 տարեկան, հօր անունը՝ Գօգոս, մօր՝ անուն Մարիամ: 1920ին կը գտնուէր իր մեծ մօրը քով Կիւրինի։ Այդ թուականին մեկնած է Դամասկոսէն Պոլիս երթալու համար։ Կիլիկիոյ ճամբուն վրայ տեսնուած է հայրենակիցի մը կողմէ։ Իր մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 1000 ֆրանք նուէր։ Իմացնել իր եղբօրը Գրիգոր Զօպանեանի 31 Rue de Fossé, Issy-les-Moulineaux (Seine) France կամ Թերթիս վարչութեան։

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։

— Կը փնտռեմ Քէմախի վերի Բագառիճէն Խոսրով Իլպիզեան եւ զաւակները Ղազարոս, Կաթիկ, Ազատուհի, եւ ֆօրեզբօրորդւոյս զաւակները՝ Աւագ, Մատթէոս եւ Մաղիկ, որոնք աքսորուած են 1915ին: Իզմիրի դէպքէն ամիս մը առաջ Մալաթիայէն լուր առնուած է աղջկան Կաթիկէն: Անկէց ի վեր լուր չկայ: Իրենց մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 500 ֆր. նուէր, իմացնել՝ H. Hougasian, Mazagan: Maroc: կամ «Յառաջ»ի: Կը խնդրուի Սուրիահայ եւ Յունահայ թերթերէն արտատպել։





*Շարժման գլուխը կանգնած է գիւղացի մը Քոզոլա որ 15.000 հոգիով յուլիս 7ին պիտի քալէ մայրաքաղաքին՝ Հէլսինկֆորսի վրայ։*

*Երեսփ. ժողովը 60ի դէմ 112 ձայնով քուէարկեց համայնավար հոսանքին դէմ՝ կառավարութեան ներկայացուցած խիստ օրէնքը, հակառակ ասոր սակայն, դահլիճը հրաժարեցաւ, թոյլ տալու համար, որ «աւելի լայն հիմերու վրայ» վերահաստատուի նախարարական կազմը։*




















**Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ**
ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերու ներկայացուցիչները 7 յուլիս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին Chope Parisienneի վերնայարկը, 64 Rue des Ecoles.

**Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ**
**ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ**
**ՎԱՂԸ ՍԷՆ ՔԼՈՒԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ**
*Հովանաւորութեամբ Պ. ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ*
*Կը նախագահէ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*
*Բանախօսութիւն, խմբերգ. մեներգ. հայկական, կովկասեան եւ եւրոպական պարեր, թոմ եւ անակնկալներ.*
*Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։*
Հաղորդակց միջոցներ.—Թրամուէյ՝ Թիւ 2 եւ 25 իջնել terminus Սէն Քլու, շոգենաւ՝ իջնել Սէն Քլու, շոգեկառք՝ Gare St. Lazareէն իջնել Սէն Քլու։ Առաջնորդներ կը սպասեն Pavillon Bleuի մօտ առաւօտեան ժամը 11էն մինչեւ 4։
Դաշտահանդէսը տեղի կ'ունենայ անցեալ տարուան հանդէսին վայրը, Սէն Քլուի պարքին մէջ, երեք աւազաններէն վեր, la Grande Gerbe կոչուած տեղը։

**ԵՐԵԿՈՅԹ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ**
*Հ. Յ. Դ. Ս. ՄԻՆԱՍԵԱՆ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ*
*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*
148-Rue Villeneuve, *Քաղաքապետարանի սրահին մէջ*
*Կը խօսի՝ ՏԻԿ. ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ*
*կը ներկայացուի Գ. Դուրեանի* «ՍԵՒ ՀՈՂԵՐԸ»
*Նուագ Մանտիկեանի կողմէ* — *Գին 5 եւ 7 ֆրանք*

**ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ**
*Շ Ա Ս.— Նախաձեռնութեամբ Ռոստոմ խումբի*
*Վաղը Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին*
*կը նախագահէ ընկ. Մ. ԳԱԲՐԻԷԼԵԱՆ*
*կը խօսի Ընկ. Բ. ԱՂԱԲԷԿԵԱՆ*
*Գեղարուեստական բաժին*
*Ընկ. Կ. ՄՈՒԹԱՖԵԱՆ կը ներկայացնէ զաւեշտ մը*

*ԼԻՈՆ.— Այսօր Շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին*
*Գ. Թաղապետարանի սրահին մէջ։*
*Կը խօսի՝ Ընկ. ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆԻ*
*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։*

**ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ**
Սթանոզի Հայր. Միութեան կողմէ եւ աջակցութեամբ նոզի երիտասարդաց միութեան այսօր շաբաթ իրիկուն ժամը ... մինչեւ առաւօտ Haroldի սրահներուն մէջ, 3 Rue Lavieuville Nord Sud, Abbesses.
*Ղեկավարութեամբ Պ. Վ. ԱԼԹՈՒՆԵԱՆԻ*
կը ներկայացուի՝ «ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ»
*Եւրոպական եւ արեւելեան նուագ, գեղարուեստական ճոխ ...*
Պարի մրցում եւ անակնկալներ
Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով
*ԳԻՆ՝ 5, 10, եւ 15 ՖՐԱՆՔ*

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ**
*ԱՅՍՕՐ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ. ԺԱՄԸ ՃԻՇԴ 9ԻՆ ՍՕՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*
8 Rue Danton, PARIS — Métro: Odéon եւ St. Michel
*Մեծ պատրաստութեամբ կը բեմադրուի Փարիզի մէջ առաջին անգամ ըլլալով*
ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ
**ԱՐՑՈՒՆՔԻ ՀՈՎԻՏԸ** (4 ԱՐԱՐ)
(ԱԶԳԱՅԻՆ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿԵԱՆՔԷ)
Մասնակցութեամբ՝ Տիկ. Ս. Ալիքսանեանի, Օր. Անահիտի, Տիկ. Լաթիֆեանի եւ Պ. Պ. Գմբէթեանի, Լաթիֆեանի, Մաքիմի, Գրիգոր Վահանի, եւայլն։
ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ *կը կատարէ «ԱՍԼԱՆ»ի դերը*
ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆ *կը կատարէ «ՋԻՆՆԻ»ի դերը*
*ԳԻՆԵՐԸ՝ 20, 15, 10 եւ 7.50 ՖՐԱՆՔ*

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱՆԻՒԼԻ փոթորիկ խումբի ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, ծանօթ հաւաքատեղին։ ներկայանալ անդամատետրով։

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ Մուրատ խումբի ժողովը վաղը առաւօտ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին, Ave. de Verdun. կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

*ԳԱՒԱՌ*

Ս. ՇԱՄՈՆԻ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը կիրակի ժամը 3ին «Վարուժան» Ակումբին մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատետրով։

*-ՎԻԷՆԻ շրջ. կոմիտէի ներկայացուցչական ժողովը այսօր շաբաթ ժամը 2ին Հ. Յ. Դ. Խաժակ Ակումբին մէջ,* 139 Rue Lafayette. *Կը խնդրուի բոլոր խումբերու (Ռոստոմ Շառ, Մակացի՝ Գրիգոր Սէն Ռամպէր, Ապառաժ Բասկալ, Քրիստափոր՝ Վիէն) ներկայացուցիչներէ ներկայ գտնուիլ արշաւ ժամուն։*

Հ. Յ. Դ. Լիոնի ժողովրդային Գրադարանը բաց է՝ Բշ. երեկոյները ժամը 7—8, իսկ Դշ. Եշ. եւ Ուր. երեկոները ժամը 7էն 8.30։ Նոր բաժանորդագրուիլ փափաքողները դիմեն B. Sabatjianի, 262 Rue Duguesclin, Lyon.

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԼԻՈՆԻ Փոքր-Հայքի ընդհ. հայր. միութեան ժողովը՝ այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Էմիլ Զոլայի վերնայարկը* (Rue Boileau 127—129,) *Օրակարգ՝ ծրագիր կանոնագրի ընթերցում եւ վաւերացում, վարչութեան ընտրութիւն։*

Հ. Կ. Խ. Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 3ին, մանկապարտէզի սրահին մէջ, 3 Rue Eclipse, Օրակարգ՝ հաշուեքննիչ յանձնախումբի զեկոյց եւ վարչութեան ընտրութիւն։

Ն. Գ. Բ.ի ժողով այս երեքշաբթի իրիկուն ժամը 9ին մէթրօ Odéon, La Petite Source. *Պարտադիր ներկայութիւն։*


IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN


**ԱԶԴ**

Ի յարգանս Գօղոս Նուպարի յիշատակին, վաղը, կիրակի Գալաքեան եպիսկոպոս պատարագ - հոգեհանգիստ պիտի կատարէ Մարսիլիոյ Ս. Յարութիւն մատրան մէջ։ Կը հրաւիրուի հայ բարեպաշտ հասարակութիւնը։

*Մարսէյլի Ազգ. Կեդր. Վարչ.*

## Բոլշեւիկեան ներքին փոխառութիւն

Խորհրդային կառավարութիւնը հրատարակեց ներքին փոխառութեան վերաբերեալ հրովարտակ մը, «հնգամեայ ծրագրի պետական ներքին փոխառութիւն» անունով։

Այս փոխառութիւնը որ մէկ անգամուան համար պիտի ըլլայ, պիտի յատկացուի ընկերվարական շինարարութեան։ Նախապէս կատարուած փոխառութեանց տոմսերու փոխանակութիւնը դիւրացնելու համար, (ճարտարարուեստացման եւ ազգային տնտեսութեան փոխառութիւններ) կառավարութիւնը հրապարակ կը հանէ 500 միլիոն րուբլիի պարտաթուղթեր։ Իսկ 1930 - 31ին, հրապարակ պիտի հանուին 850 միլիոն րուբլիի պարտաթուղթեր՝ 10 տարիէն վճարելի։

## Հակաֆաշիստ թռուցիկներու խնդիրը

Զուիցերիոյ Թէսսէն նահանգին ոստիկանութիւնը վերջացուց հարցաքննութիւնը իտալացի օդանաւորդ Պասսանէզիի, որ կը մեղադրուէր թէ Միլանի վրայ ցրուած է ֆաշիստական կառավարութեան դէմ թռուցիկներ։

Պասսանէզի կ'ուրանայ իրեն վերագրուած կարգ մը արարքներ։

Ոստիկանութիւնը իր տրամադրութեան տակ ունի միայն մէկ թռուցիկ եւ չի գիտեր թէ յարեւնման՞ է այն թռուցիկներուն, որոնք նետուեցան Միլանի վրայ։ Այդ թռուցիկը քաղաքական մեծ նշանակութիւն չունի։ Պարզապէս կը հրաւիրէ ժողովուրդը որ այլեւս չծխէ, այդ կերպով վնասելու համար իտալական ծխախոտի մենաշնորհին։

Թռուցիկներու բաղդատութիւնը միայն պիտի կրնայ երեւան բերել թէ միջազգային օրէնքի դէմ զանցառում մը գործուա՞ծ է։

## Եւրոպայի Միացեալ-Նահանգները

Եւրոպայի Միացեալ-Նահանգներու կազմութեան մասին, Ֆրանսայի արտաքին նախարար Պրիանի յուշագրին պատասխանեց Գերմանիա։ Գերմանիա եւս համամիտ է ձեռնարկին, որուն իրականացման կը բերէ իր գործակցութիւնը։ Կը կարծէ թէ «վերջնական նպատակը պէտք է ըլլայ, հաշտեցման ոգիով ձեռնարկել յանգուցն բարեփոխմանը այն պայմաններուն, որոնք անհանդուրժելի կը նկատուին եւ այս կերպով, յաջողցնել Եւրոպայի ճշմարիտ խաղաղեցումը, որ միայն, արդարութեան եւ հաւասարութեան սկզբունքներու վրայ կրնայ հիմնուիլ»։ Գերմանիա իր պատասխանով, պահանջ կը դնէ նաեւ որ Թուրքիա եւ Ռուսիա եւս մասնակցին։

Պրիանի յուշագրին իրենց պատասխանները յանձնեցին նաեւ Շուէտ, Նորվեկիա, Եսթոնիա, Զեխոսլովաքիա։ Իսկ Ճափոնի կառավարութիւնը պատասխանեց թէ որ եւ է ընդդիմութիւն ցոյց չի տար Եւրոպայի Դաշնակցային Միութեան ծրագրին, պայմանաւ որ, ան իբր հակառակորդ չկանգնի Եւրոպայէ դուրս մնացած երկիրներուն դէմ։

## Ֆինլանտիոյ խորհրդարանը լուծուած

Ֆինլանտայի Խորհրդարանը որ բացառիկ նիստի հրաւիր՞ուած էր քուէարկելու համար հակահամայնավար օրէնք մը, լուծուեցաւ կառավարութեան կողմէ, ընկերվարականներու բռնած դիրքին հետեւանքով։ Ընկերվարականները չքուէարկեցին օրէնքը այն առարկութեամբ թէ՝ պէտք է սպասել նոր ընտրութիւններու ելքին, օրինականացնելու համար նման խիստ միջոց մը, որ համայնավարները կը վտարէ հանրային-քաղաքական գործունէութենէ։

Նոր ընտրութիւնները պիտի կատարուին հոկտեմբեր 1ին, որմէ յետոյ, նոյն ամսուն 20ին, խորհրդարանը պիտի վերաբացուի։

## Հինտէնպուրկ կը մերժէ Հռէնոս երթալ

Գերման հանրապետութեան Նախագահը Հինտէնպուրկ մերժեց երթալ Հռէնոսեան նահանգները, մասնակցելու համար ազատութեան հանդէսներուն։

Փրուսիական կառավարութեան ուղղուած նամակով մը, Հինտէնպուրկ կը բացատրէ թէ հանդէսներուն մասնակցութեան համար, իր կողմէ պայման դրած էր որ Փրուսիա վերցնէ «Պողպատէ Սաղաւարտ»ներուն դէմ դրած արգելքը։ Այդ արգելքը վերցնելու համար, Փրուսիա դրած էր պայմաններ, զորս Հինտէնպուրկ անընդունելի կը գտնէ եւ կը նկատէ թէ Նախագահի իր սահմանադրական իրաւունքը եւ իր անկողմնակալութիւնը թոյլ չեն տար մասնակցելու հանդէսներու, որոնցմէ վտարուած կը մնայ նախկին պատերազմիկներու կազմակերպութիւն մը։

Ֆրանսական մամուլը՝ յոռի մեկնութիւններ կու տայ Հինտէնպուրկի այս քայլին։

.·. Վերջին լուրի մը համաձայն, Հինտէնպուրկի եւ Փրուսիական կառավարութեան միջեւ ծագած վէճը կարգադրուելու վրայ է։

«Պողպատէ Սաղաւարտ»ները յանձն կ'առնեն չկատարել զինուորական մարզանքներ, իսկ Հինտէնպուրկ չի հրաժարիր դէպի Հռէնոս իր ճամբորդութենէն։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՍՊԱՆԻՈՅ ՄԷՋ հանրապետական կուսակցութիւն մը կազմուեցաւ։ Կուսակցութեան գլուխը կը գտնուի նախկին միապետական մը Ալքալա Զամորա, որուն հետ կը գործեն նաեւ քաղաքական կարեւոր անձնաւորութիւններ։

ՍԻԼԷԶԻՈՅ հանքային աղէտին զոհերէն շատերը դեռ կը մնան փլատակներուն տակ։ 44 դիակներ տակաւին կարելի չէ եղած դուրս հանել։ Փլատակները մաքրելու գործողութիւնները դանդաղ կ'ընթանան, ածխային թթուին պատճառով, որ վտանգի կ'ենթարկէ փրկարար խմբակներուն կեանքը։

ՎԷԶՈՒՎ դեռ չէ հանդարտած բոլորովին։ Երկու օր տեւող թանձր մառախուղէ մը վերջ, կարելի եղաւ հաստատել թէ Վեզուվ դեռ կը շարունակէ բորբոքիլ, բայց հանդարտօրէն։

«ՅԱՌԱՋ», կը ծախուի ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ
Վաճառատուն. մէջ. 51 Rue Monsieur le Prince





## "ԴՐՕՇԱԿ" ի

Թիւ 6-7 (Յունիս-Յուլիս)։

Նահանջը եւ իր պատճառները (խմբագրական)։ Հերթական խնդիրները (Ա. Ջամալեան)։ Ասրիէլեան Եղեռնը քննական ակնոցով (Կ. Սասունի)։ Խորհրդային Հայաստանի տնտեսութիւնը (Ա. Արծրունի)։ Կուկունեանի արշաւանքին մասին, Ինտերնացիոնալ, Մեր զոհերը։ Թղթակցութիւններ, Գին 2.50 ֆրանք։

մար։ Կիլիկիոյ ճամբուն վրայ տեսնուած է հայրենակիցի մը կողմէ։ Իր մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 1000 ֆրանք նուէր։ Իմացնել իր եղբօրը Դրիգոր Զօպանեանի 31 Rue de Fossé, Issy-les-Moulineaux (Seine) France կամ թերթիս վարչութեան։

Կը խնդրուի տրտասահմանի թերթերէն արտատպել։

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Ագրիւր Սերոբ խումբի ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 8ին, 184 Ave. d'Italie. Metro. Porte d'Italie. Բացակաները պատասխանատուութեան պիտի ենթարկուին։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան վիճաբանական ժողովը՝ այսօր հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին, գրադարանի սրահը։ Կը հրաւիրուին ընկերներու համակիրները։

ՏԷՍԻՆԻ կոմիտէի ընկերական ընդհանուր ժողով, այս կիրակի ժամը 2ին, Սօսիէթէ Լիոնէզի սրահը։ Կարեւոր օրակարգ. Պարտաւորիչ ներկայութիւն։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերներն ու ընկերուհիները վաղը ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատոմսով։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Օրտուցի Արշակի Զաքարեան (Ծնեալ Քիւրտեան), ամուսնոյն անունը Յովհաննէս։ Երեք ամիս առաջ Պոլսէն մեկնած են Ֆրանսա։ Իմացնել Տիկ. Զուարթ Անգեանի, Quartier St. Joseph. Le Bocca, Cannes. A. M.

— Կը փնտռուի Էնկիւրի նահանգին Սոանոս գիւղէն Յակոբ Զօպանեան 27—28 տարեկան, հօր անուն՝ Պօղոս, մօր՝ անուն Մարիամ։ 1920ին կը գտնուէր իր մեծ մօրը քով Մերսին։ Այդ թուականին մեկնած է Դամասկոսէն Պոլիս երթալու համար։









EMPIRE Սփիւռք-Հայ՝ 37 Av. Wagram
IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN















## Հ. Յ. Դ ԼԻՈՆԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ
## ՀԵՏԵՒԵԱԼ ԽՈՒՄԲԵՐԸ

*ՀԱՄԱԶԱՍՊ.— 22 Յուլիս Երեքշաբթի իրիկուն ժամը 9ին Գրադարանի սրահը:*

*ԿՌՒԿՌՒՆԵԱՆ.— 22 Յուլիս Երեքշաբթի իրիկուն ժամը 9ին Նիկողոսեանի ճաշարանը:*

*ԿԱՅԾԱԿ.— 23 Յունիս Չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին Գրադարանի սրահը:*

*ՔԵՌԻ.— 23 Յուլիս Չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին Ճանկէօզեանի ճաշարանը:*

*Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր եւ անհրաժեշտ է:*

## Դ Ա Շ Տ Ա Հ Ա Ն Դ Է Ս
### ԴՊՐՈՑԱՍէՐԻ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*Այսօր կիրակի ժամը 2էն 10 Վարժարանիս պարտէզին մէջ*

1 Boulevard du Nord, Le Raincy-Pavillons

Յոխ գեղարուեստական բաժին Մուտք՝ 5 ֆրանք

Հաղորդակց. միջոցներ.—Առնել Օփէրայէն կամ Ժուէսէն 21A Թրամուէյ, շոգեկառք Կառ տը Լէսթէն կարկանի ուղղութիւն: ժամը 8.56, 10.15, 11.40, 13 եւ 14ին։

Պարտէզը տրամադրելի է առաւօտեան ժամը 10էն սկսեալ։

---

Մամուլի տակ է եւ շուտով լոյս կը տեսնէ

## Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ԳՈՐԾԸ
## "ԻՄ ԳԻՐՔԸ", Բ. ՀԱՏՈՐ (ՊԱՏԱՆԵԿՈՒԹԻՒՆ)

Ա. հրատարակութիւն ՀՐԱՆՑ-ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏԱՆ

*Գ Ի Ն 20 Ֆ Ր Ա Ն Ք*

*ՕԳՏՈՒԵՑԷՔ ԱՌԻԹԷՆ.— Մինչեւ 30 Յուլիս*

30 ֆրանք կանխիկ վճարողները կը ստանան Ա. եւ Բ. հատորները միասին:

Այժմէն կարելի է դիմել Librairie H. SAMUEL, 51 Rue Monsieur-le-Prince, Paris (VIe), Հեռաձայն՝ Danton 88-65։

Հայերէն եւ ֆրանսերէն ամէն տեսակ գիրքեր, բառարան, գրական, վիպական, պատմական եւ դպրոցական գործեր:

*Վերջին կատարելագործութեամբ օժտուած կազմատուն.* Արագ եւ մաքուր աշխատանք: Գիրքերու ՎԵՐՆԱԴԻՐԸ ոսկետիպ:

*Կը ստանձնենք տպագրական ամէն տեսակ գործեր:*

---

*Պ. Վահրամ Մինասեան, այրի Տիկին Մարիամ Խորոզեան եւ զաւակունք, այրի Տիկին Զարուհի Մկրեան եւ զաւակունք (Գահիրէ), Տէր եւ Տիկին Սամփսոն Մկրեան (Ցուննատան), Տէր եւ Տիկին Միհրան Մկրեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Անուշաւան Պիւրքճեան, այրի Տիկին Նեվզուր Թերզիպէեան եւ զաւակունք (Պոլիս), Տէր եւ Տիկին Գրիգոր Ճամպազեան, Այրի Տիկին Փարիզ եւ զաւակունք, այրի Տիկին Համասփիւռ Սաղաթէլեան եւ զաւակունք, Պ. Կարապետ Կարապետեան եւ ազգականները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն*

### ՏԻԿ. ՏԻՐՈՒՀԻ ՄԻՆԱՍԵԱՆԻ

*զառանցէտ մահը:*

*Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4.30ին.* 56 Rue Michelet, Sevran, (S. et O.).

*Շոգեկառք՝* Gare du Nordէն *ժամը 1.25 եւ 3ին։*

EMPIRE Սինեմա-Հոլ՝ 37 Av. Wagram



Le Gérant H. STEPHAN





Ցայտնի է թէ Ռիկով՝ աջ ընդդիմադրութեան պետերէն է։ Անոր նշանակումը իբր դեսպան Պերլինի, քաղաքական շրջանակները կը նկատեն համապատասխան խորհրդային սովորութիւններուն։ Բոլշեւիկները առհասարակ արտասահմանի պաշտօնները կը յանձնեն այն ընդդիմադիրներուն, որոնք բաւական կը վնասեն իրենց՝ երկրին մէջ։

## Ռումէն նախարարին դէմ ոճիրը

ՊՈՒՔՐԷՇ, 22 Յուլիս. - Ներքին փոխ-նախարար Անկելեսքուի դէմ, մակեդոնացի ուսանողներու կողմէ գործուած ոճրին հետեւանքով, բացուած քննութիւնը երեւան հանեց թէ ոճրագործը 22 տարու երիտասարդ մը, ուսանող չէ։ «Էփոքա» թերթին մէջ խմբագիր էր. բայց խմբագրութենէն վտարուած էր իր յեղափոխական ծայրայեղ ձգտումներուն հետեւանքով։ Ոճրագործը յայտնեց թէ որոշած էր սպաննել Անկելեսքօն, որովհետեւ կը նկատէր թէ՝ անոր վարած քաղաքականութիւնը Տոպրուճայի մէջ, նպաստաւոր էր պուլկար եւ թուրք փոքրամասնութեանց։ Ոճրին ներկայ ուսանողներուն մեղսակցութիւնը չէ հաստատուած։ Այս վերջինները կ'ուրանան թէ ո'չ մէկ բանէ տեղեկութիւն ունին եւ փոխ-նախարարին ներկայացեր էին, միմիայն նպաստ ուզելու՝ համալսարանական ընկերակցութեան մը համար։

## Պարսկական գահին ժառանգութիւնը

Պարսիկ արքայական Ղաճար գերդաստանէն «Իշխան Հասան», որ Փարիզ կը բնակի. մէկ քանի օր առաջ, ֆրանսական թերթերու ղրկուած յայտարարութեամբ, ինքզինքը կը ներկայացնէր միակ իրաւասու ժառանգորդը պարսկական գահին։

Այս առթիւ, պարսիկ իրաւասու շրջանակներէ. «Հավաս»ի հաղորդուած է հետեւեալ յայտարարութիւնը։

«Պարսիկ խորհրդարանը 1925 հոկտ. 31ին յայտարարեց Ղաճարներու հարստութեան անկումը։

«Սահմանադիր ժողովը, որ այդ թուականէն քիչ յետոյ գումարուեցաւ, Պարսկաստանի գահը յանձնեց Րիզա Շահ Փահլէվիի եւ անոր ժառանգորդներուն։ Ասկից զատ, փոփոխութեան ենթարկեց սահմանադրութեան 36, 37, 38 եւ 40րդ յօդուածները՝ հաստատելով Ղաճարներու գահընկէցութիւնը եւ Փահլէվի Տան գահակալութիւնը։

«Պարսիկ ժողովուրդը, վերջնապէս լուծուած ըլլալով այս հարցը, Ղաճարներու գերդաստանէն որեւէ մէկը չի կրնար այսօր պահանջել 1925ին գահազուրկ հռչակուած՝ հանգուցեալ Ահմէտ Միրզայի իրաւունքները։

«Հանգուցեալին եղբօր՝ Մուհամմէտ Հասան Միրզայի յաւակնութիւնները որեւէ հիմ չունին ուրեմն եւ ժողովուրդը, որուն կոչ կ'ընէ, 1925ին արդէն, իր վճիռը տուած է այս մասին»։

## Պուլկարիա եւ Եւրոպա

Պրիանի յիշատակագրին պատասխանեց նաեւ պուլկար կառավարութիւնը։ Պուլկարիա կը թելադրէ որ նոր կազմակերպութեան հիմը դրուի փոքր ազգերու հանդէպ՝ տնտեսական ու քաղաքական օժանդակութեան եւ պաշտպանութեան բարոյական գաղափարին վրայ։

Իսկ Ռուսիոյ եւ Թուրքիոյ մասնակցութեան գալով, պուլկար կառավարութիւնը կը նկատէ.— Եթէ Ռուսիոյ մասնակցութեան դէմ կան ժամանակաւոր արգելքներ, պարագան նոյնը չէ Թուրքիոյ համար, որ ո'չ միայն տէր է եւրոպական հողամասի մը, այլ նաեւ, Ռուսիայէն կը տարբերի անով, որ միջազգային և սահմանադրական օրէնքներու տեսակէտով ճանչցուած վարչաձեւ մըն ալ ունի»։

## Երկրագործական դաշնակցութիւն մը

ՊՈՒՔՐԷՇ, 22 յուլիս.— Ռումանիոյ, Եուկօսլաւիոյ եւ Հունգարիոյ միջեւ, երկրագործական խորհրդաժողովի մը բացումը կատարուեցաւ Ռումանիոյ առեւտրական նախարարին կողմէ։

Նախարարը բացատրեց թէ, ամբողջ աշխարհը նեղող տնտեսական դժուարին կացութեան հետեւանքով, անհրաժեշտ է գործակցութեան հիմերը դնել երկրագործական պետութիւններու միջեւ։ Խորհրդաժողովին կ'իյնայ փնտռել եւ գտնել ելք մը այս կացութեան եւ մշակել ուղեգիծ մը, որ կանոնաւորէ երկրագործական արտադրութիւնն ու անոր սպառումը։



















Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՆԻԼԻՌ-Պաւա Քոլոնպի Զէյթուն ենթակոմիտէն ստիպողական ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան եւ Փօթըրիկ խումբերու բոլոր ընկերները, այս Կիրակի իրիկուն ժամը ճիշդ 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ՝ և գեկոյց ներկայացուցչական ժողովի։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. անդամականժողովը՝ վաղը հինգշաբթի իրիկուն. ժամը 8.30էն, Գրադարանի սրահը։ Ներկայանալ անդամատոմսով։

ԼԻՈՆԻ Վրէժ խումբի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը՝ այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 63 Րիւ տը լա Րէփիւպլիք որճարանին վերնայարկը։

ՌՈՍՏՈՄ Գրադարանը փակ է Օգոստոս 1 — Սեպտեմբեր 1։ Իրենց մօտ գիրք ունեցողներէն կը խնդրուի շուտով վերադարձնել գիրքերը։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին վճռաբանական ժողովը այսօր Հինգշաբթի ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Նիւթ՝ Պատերազմի թեր ու դէմ։

Զ. Ե. Ո. Միութեան Անիէռի ժողովը՝ վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին 35 Rue Emile Zola, Պուա Քոլոմպ.

ՖՐԱՆՍԱՅԻ «Հայ Սկաուտներու» միութեան Մարսէյլի մասնաճիւղը հաւաքոյթի կը հրաւիրէ իր գայլուկներն ու արձանագրուիլ փափաքողները վաղը առաւօտ ժամը 9ին, 90 Rue Stanislas Torrents.

ՄԱՐՍԷՅԼԻ Հայ Լեգէոնական միութեան ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 8.30ին Rue Colbert, Bar de la Postի սրահին մէջ։

ՏԱՐՕՆ-Տուրուբերանի Հայր.

միութեան Տէօրթ-Եօլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 2ին Սօսիէթէ Լիօնէզի սրահը։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հ. Լ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը կը փնտռէ ընկերներ Սարգիս Մուրատեան, Վահան Տէր Վարդանեան եւ Վահրամ Պապիկեան։ Իմացնել իրենց հասցէները Union des Volontaires Arméniens dans l'Armée Française, Section de Marseille, B. P. Colbert 381, Marseille.

— Խնուսի Խըրթ գիւղացի Շուշան Քէօթիւկեաւուրեան (որ այժմ Տէր Զօր կը գտնուի) կը փնտռէ Խնուսի Խըրթ գիւղացի իր ամուսինը Խաչատուր Քէօթիւկեաւուրեան, իր տագրերը Առաքել, Աղաճան եւ Գէորգ Քէօթիւկեաւուրեանները, որոնք ընդհանուր պատերազմէն առաջ Կարս (Հայաստան) կը բնակէին։ Իմացնել «Յառաջ»ի կամ Missak Sissérianի, B. P. 35, Dair-ez-Zor, (Syrie).



ԵՌԱԳՈՅՆ ժապաւէններ, ծախուին «Յառաջ»ի գրասենեակը, Պ. Խնկիկ Կէնճեանի մօտ, Rue Boileau, Lyon.






IMPRIMERIE - MASSIS - E

208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPH...










